Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 4 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 52, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—02—87։


# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Մարտի 8-ը կանանց Միջազգային կոմունիստական օրն է, ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց մարտական ուժերի համախմբման, կնոջ իրավահավասարության և երջանիկ կյանքի համար մղվող պայքարի մարտական տոնը։

39 տարի առաջ, 1910 թվի մարտի 8-ին Դանիայի Կոպենհագեն քաղաքում տեղի ունեցավ 2-րդ Ինտերնացիոնալի կոնգրեսը. այդ նույն ժամանակ գումարվել էր կանանց միջազգային կոնֆերանսը, որը խոշոր պատմական նշանակություն ունեցավ միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումների պատմության մեջ։ Այդ կոնֆերանսի կազմակերպիչներից մեկի՝ Կլարա Ցետկինի առաջարկությամբ կոնֆերանսում որոշում ընդունվեց մարտի 8-ը ամեն տարի տոնել որպես կանանց Միջազգային կոմունիստական օր։

Կոնֆերանսի որոշման մեջ նշված էր, որ կանանց Միջազգային կոմունիստական օր-

*վա անցկացման խնդիրն է՝ ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց համախմբել Լենինի, բոլշևիկյան պարտիայի դրոշի տակ, մոբիլիզացիայի ենթարկել նրանց՝ պայքարելու բուրժուազիայի տիրապետության դեմ պրոլետարական ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակի համար։*

*Առաջին անգամ կանանց Միջազգային կոմունիստական օրը տոնվել է 1911 թվին Գերմանիայում, Ավստրիայում, Դանիայում և Շվեյցարիայում։ Ռուսաստանում կանանց Միջազգային կոմունիստական օրը տոնվել է սկսած 1913 թվից։ 1914 թվին կանանց Միջազգային կոմունիստական օրը տոնեցին Պետերբուրգի, Մոսկվայի, Սամարայի, Սարատովի, Իվանովոյի, Կիևի բանվորուհիները։ Պետերբուրգում սկսվեց հրատարակվել «Ռաբոտնիցա» ժուռնալը, որը լուսաբանում էր Ռուսաստանի կանանց կյանքի, աշխատանքի և պայքարի խնդիրները։*

*Իմպերիալիստական պատերազմի տարիներին բոլշևիկները օգտագործում էին կանանց լեգալ կազմակերպությունները պատերազմի դեմ պայքարելու, իմպերիալիստական թալանչիական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու մար-*



*տական լոզունգի շուրջը կանանց համախմբելու համար։*

*1917 թվին, երբ ռևոլյուցիոն կանայք Մարտի 8-ի տոնակատարության պատրաստություններ էին տեսնում, ոստիկանությունը կատաղի հարձակում սկսեց նրանց դեմ։ Պետերբուրգում մարտին կազմակերպվեց կանանց մեծ ցույց՝ «Կորչի պատերազմը», «Խաղաղություն և հաց» լոզունգներով։*

*Կնոջ ազատագրման համար մղվող պայքարը նոր չի, սակայն հարցը իր լիակատար լուծումն ստացավ միայն սոցիալիզմի երկրում, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ։*

*Ցարական Ռուսաստանում կինը չարքաշ կյանք էր վարում ընտանիքում։ Ծայրահեղ չքավորությունը կանանց մղում էր դեպի վարձու աշխատանքը։ Արդյունաբերության մեջ սևագործություն, գյուղատնտեսության մեջ բատրակություն— ահա այն ասպարեզները, ուր կինը մուտք ուներ և այդտեղ էլ նրա աշխատանքը վարձատրվում էր տղամարդու աշխատանքից շատ ավելի ցածր։ Ցարական իշխանության օրոք վարձու աշխատանք կատարող կանանց 80 տոկոսը խոհարարներ, սևագործներ ու բատրակներ էին, 13 տոկոսը աշխատում էր տեքստիլ ար-*

դյունաբերության մեջ և միայն 4 տոկոսը՝ դպրոցներում, գրադարաններում, դեղատներում ու հիվանդանոցներում։

Ընկեր Ստալինը այսպես է նկարագրում կնոջ վիճակը նախքան Հոկտեմբերյան ռևոլյուցիան։

«Ի՞նչ էր ներկայացնում իրենից կինն առաջ, հին ժամանակ։ Քանի կինը հոր տանն էր, նա հաշվվում էր աշխատավորներից, այսպես ասած, վերջինը։ Աշխատում էր նա հոր համար, աշխատում էր առանց ձեռքերը ծալելու և հայրը դեռ նախատում էր նրան՝ «Ես եմ քեզ կերակրում»։ Երբ նա ամուսնանում էր, աշխատում էր ամուսնու համար, աշխատում էր այնպես, ինչպես ստիպում էր նրան ամուսինը և էլի ամուսինն էր նրան նախատում՝ «Ես եմ քեզ կերակրում»։

Կնոջ դրությունը այժմ, բուրժուական երկրներում հիշեցնում է նրա նախկին դրությունը ցարական Ռուսաստանում։ Ֆրանսիական օրենքների համաձայն կինը չի կարող առանց ամուսնու թույլտվության աշխատել, պրոֆեսիա ընտրել։ Ֆրանսիայում սովորական են այնպիսի դեպքեր, երբ ամուսինը չի թույլատրում կնոջը դառնալու բժիշկ, դերասանուհի և այլն։ Կնոջ «անհավատարմությունը» պատժվում է բանտար-



կությամբ մինչև երկու տարի ժամանակով, իսկ ամուսնու անհավատարմությունը միայն տուգանքով, այն էլ այն դեպքում միայն «եթե ամուսինը սիրուհուն բերի տուն և այնտեղ պահի նրան»։

Անգլիայում կինը նույնպես ամբողջովին ենթակա է ամուսնուն. օրենքի համաձայն ամուսինն իրավունք ունի կնոջ նկատմամբ նույնիսկ մարմնական պատիժներ գործադրելու։ Այնտեղ միևնույն աշխատանքի համար կինը ստանում է տղամարդուն տրվող աշխատավարձի միայն 50—55 տոկոսը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը հիմնովին փոխեց մեր երկրում կնոջ կյանքը, նրա ապրելակերպը, կինը դարձավ տղամարդու հետ իրավահավասար, նրա քաղաքացիական իրավունքները պաշտպանվում են օրենքով։

Լենինը սովորեցնում է, որ կնոջ փաստական ազատագրման, նրա իրավունքները տղամարդու իրավունքներին հավասարեցնելու համար բավական չէ միայն օրենքով ազատագրել նրան, նաև անհրաժեշտ է, որ կանայք ակտիվ կերպով մասնակցեն սոցիալիստական արտադրությանը, ներգրավվեն երկրի կառավարման գործում։

Սովետական երկրում կնոջ իրավունքները

և նրա դերը հասարակական կյանքում վառ կերպով արտահայտվում են Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ, որի 122-րդ հոդվածն ասում է.

«Կնոջը ՍՍՌՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում»։

ՍՍՌՄ-ում կինը ակտիվ մասնակցություն ունի երկրի կառավարման գործում։ 480 հազար կանայք ընտրված են տեղական Սովետներում, 277 կանայք ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատներ են, ավելի քան 1700 կանայք ընտրված են Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետներում։ Այդ թվումն են առաջավոր գիտնականներ, արվեստի և կուլտուրայի ֆրոնտի նշանավոր գործիչներ, արդյունաբերության առաջավորներ, կոլտնտեսային դաշտերի հարվածայիններ։

Այդ մասնակցությունը ապահովված է նաև մոր և մանկան շահերի պետական պաշտպանությամբ, տասնյակ հազարավոր մանկամսուրների, մանկապարտեզների, կաթնախոհանոցների, լվացքատների, հասարակական խոհանոցների կազմակերպ-



մամբ և այլ միջոցառումների իրականացմամբ։

ՍՍՌՄ-ում ավելի քան 350 հազար առաջավոր կոլխոզնիկուհիներ բրիգադաների և կոլխոզային ֆերմաների ղեկավարներ են։ 15 հազար կանայք կոլխոզի նախագահներ, կամ նրանց տեղակալներ են։ 250 հազար կանայք աշխատում են որպես տրակտորային բրիգադաների բրիգադիրներ, տրակտորիստներ և կոմբայնավարներ։ ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատում են ավելի քան 250 հազար կին ինժեներներ և տեխնիկներ։ Հետաքրքիր է նշել, որ 1897 թվին Պետերբուրգում եղել է միայն 3 կին ինժեներ, իսկ արդեն 1939 թվին այնտեղ կար 23 հազար 726 կին ինժեներ։

Հայրենական պատերազմի նախօրյակին արդյունաբերության մեջ, տրանսպորտում և շինարարության վրա աշխատող կանանց թիվը հասավ 11 միլիոն մարդու, կամ ամբողջ աշխատավորների 40 տոկոսին։

ՍՍՌՄ ժողովրդական լուսավորության օրգաններում աշխատում են մեկ միլիոն կանայք, առողջապահության ցանցում աշխատում են մոտ 100 հազար բժշկուհիներ։ Սովետական Միության գիտա-հետազոտական ինստիտուտներում և լաբորատորիաներ-

րում գիտական աշխատանք են կատարում 33 հազար կանայք։

1946 թվին ՍՍՌՄ-ում 205 կնոջ շնորհվեց Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչումը՝ գիտության, տեխնիկայի, արվեստի ու գրականության ասպարեզում աչքի ընկնող աշխատանքների համար։

Միայն 1947 թվին ՍՍՌՄ-ում բազմազավակ և միայնակ մայրերին օգնելու, մոր և մանկան առողջությունը պահպանելու համար ծախսված է ավելի քան 10 միլիարդ ռուբլի։

Երբ մեր երկրի միլիոնավոր կանայք մասնակցեն Սովետական իշխանության ձեռնարկած գործին, ասել է Վլադիմիր Իլյիչ Լենինը, այն ժամանակ սոցիալիստական շինարարությունը կլինի այնպես հաստատուն, որ մեր երկրի ոչ մի տեսակ արտաքին ու ներքին թշնամիներ սարսափելի չեն լինի Սովետական Ռեսպուբլիկայի համար։

Սովետական կանայք տվել են փայլուն ներկայացուցիչներ մեր երկրի կյանքի ու պայքարի բոլոր բնագավառներում։ Հիշենք Աննա Իվանովնա Շչետինային, որը որպես օվկիանոսային նավի նավապետ կատարել է 2 շուրջերկրյա ճանապարհորդություն, հի-



շենք օդաչուներ Վալենտինա Գրիզոդուբովային, Պոլինա Օսիպենկոյին, Մարինա Ռասկովային, որոնք սահմանել են մի քանի միջազգային ռեկորդներ։ Բոլորին հայտնի է պատմական գիտությունների դոկտոր Ա. Պանկրատովայի անունը։ ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի թղթակից անդամ Պ. Յա. Պոլուբարինովա—Կոչինան աշխատում է հիդրոդինամիկայի բնագավառում։

Ժողովրդական դատավորների 35 տոկոսը սովետական երկրում կազմում են կանայք, տասնյակ կանայք մարզային և ռեսպուբլիկական դատարանների նախագահներ են։

Բացառիկ էր սովետական կնոջ մասնակցությունը Հայրենական Մեծ պատերազմում։ Անհուն հայրենասիրությամբ համակված և դեպի թշնամին կատաղի ատելությամբ լի սովետական կանայք ոտքի ելան մեր երկիրը ներխուժած ֆաշիստական բարբարոսների դեմ։ Պատերազմի առաջին օրերից, արձագանքելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինի կոչին՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար», «Ամեն ինչ հաղթանակի համար», միլիոնավոր կանայք գնացին գործարաններն ու ֆաբրիկաները, հանքերն ու կոլխոզային դաշտերը՝ փոխարինելու ռազմաճակատ մեկնած իրենց ամուսիններին, եղբայրներին

և զավակներին։ Եվ եթե պատերազմի ամ-
բողջ ընթացքում կոլխոզային գյուղն անխա-
փան կերպով մատակարարեց ռազմաճակա-
տին և երկրին պարենամթերք, իսկ արդյու-
նաբերությանը՝ հումք, այդ գործում մեծ
բաժին ունի սովետական կոլխոզնիկուհին։
Եթե մեր երկրի արդյունաբերությունը, բոլ-
շևիկյան պարտիայի անմիջական ղեկավա-
րությամբ, արագ վերակառուցվեց ռազմա-
կան ձևով և ապահովեց Սովետական Բա-
նակն անհրաժեշտ ռազմական տեխնիկայով
ու հանդերձանքով, այդ գործում մեծ բաժին
ունի սովետական կինը։

Պատերազմի տարիներին Թիկունքում կա-
տարած իր անձնվեր աշխատանքով սովե-
տական կինը նվաճեց մեր Հայրենիքի աշ-
խատավորների ջերմ երախտագիտությունը,
որը հիանալիորեն արտահայտված է ընկեր
Ստալինի հետևյալ խոսքերով.

«Պատմության մեջ ընդմիշտ կմտնեն
ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլ-
խոզներում ու սովխոզներում աշխատանքի
հիմնական ծանրությունը իրենց ուսերի վրա
կրած սովետական կանանց ու մեր պանծա-
լի երիտասարդության աշխատանքային
անօրինակ սխրագործությունները»։

Սովետական ժողովուրդը հպարտությամբ



և մեծագույն հարգանքով է պահպանում
Հայրենիքի ազատության և անկախության
համար հերոսաբար զոհված իր քաջարի
դուստրերի՝ Զոյա Կոսմոդեմյանսկայայի,
Լիզա Չայկինայի, լեգենդար «Երիտասարդ
գվարդիայի» անդամներ Գրոմովայի, Շևցո-
վայի և շատ ուրիշների հիշատակը։ Սովե-
տական մարդիկ չեն մոռանա գիշերային
ռմբակոծիչ ավիացիոն գնդի կանանց։ Այդ
գունդը, որի հրամանատարն էր գվարդիայի
մայոր Եվդոկիա Բերշանսկայան, անօրինակ
համարձակություն ու քաջություն էր հան-
դես բերում թշնամու դեմ մղվող մարտերում։

Սովետական կառավարությունը բարձր
գնահատեց Հայրենական պատերազմի մաս-
նակից քաջարի կանանց սխրագործություն-
ները։ Հայրենական Մեծ պատերազմում ցու-
ցաբերած արիության և քաջության համար
120 հազար կին մարտիկներ և սպաներ
պարգևատրվել են շքանշաններով ու մեդալ-
ներով։ 62 կին ռազմիկների շնորհված է Սո-
վետական Միության Հերոսի բարձր կոչումը։
1877 կանայք պարգևատրված են «Հայրենա-
կան պատերազմի պարտիզանուհի» մեդա-
լով։

Սովետական կանանց սխրագործություն-
ները ոգեշնչում և օրինակ էին ծառայում

ազատասեր երկրների կանանց համար, պայքարի կոչելով նրանց ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների։ Դիմադրության ջոկատներում և պարտիզանների շարքերում կանայք ոչնչացնում էին գերմանական օկուպանտներին՝ հանուն իրենց ազատ կյանքի։

Մեր երկրի կյանքում կատարված հոյակապ փոփոխությունների շնորհիվ երբեմնի իրավազուրկ հայ կինը ներկայումս դարձել է հասարակական կյանքի ակտիվ կառուցողը, պետական գործիչ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների թվում մենք տեսնում ենք հայ ժողովրդի փառապանծ դուստրեր, ՍՍՌ Միության ժողովրդական արտիստուհի Հայկանուշ Դանիելյանին, կոմունալ տնտեսության մինիստրի տեղակալ Նունիկ Թուխիկյանին, էջմիածնի շրջանի Վ. Խաթունարխ գյուղի կոլխոզի նախագահ Ռեբեկա Ղարիբյանին, Բերիայի շրջանի Շահումյանի անվան կոլխոզի նախագահ Նազանի Գալստյանին, Կիրովականի Քիմիական գործարանի բանվորուհի Անիչկա Դյուքչյանին։

Կանայք պատվավոր տեղ են գրավում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատների շարքերում, որտեղ նրանց թիվը հասնում է 75-ի, Հայկական ՍՍՌ աշխատավորների դեպուտատների գյուղական



ավանային, շրջանային և քաղաքային Սովետներում ընտրված 12198 դեպուտատներից 4070-ը կանայք են։

Մեր Ռեսպուբլիկայի լուսավորության ցանցում աշխատում են 12000 կանայք. գիտահետազոտական հիմնարկներում աշխատողների 52 տոկոսը և առողջապահության ֆրոնտում աշխատողների 58 տոկոսը կանայք են։ Ավելի քան 500 մայրեր հպարտությամբ կրում են «Հերոսուհի մայր» ոսկե աստղ մեդալը։

Ռեսպուբլիկայի ինտելիգենցիայի շարքերում են գտնվում առաջավոր շատ կանայք. նրանց թվին են պատկանում Երևանի Ապակու գործարանի դիրեկտոր, Ստալինյան մրցանակի լաուրեատ Մարիյա Բաբաջանյանը, Կիրովի անվան գործարանի տեխնիկական վերահսկողության բաժնի պետ, ինժեներ Լուսյա Հովհաննիսյանը, Երևանի Կահույքի գործարանի դիրեկտոր Սոնյա Սարվազյանը, ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան ռայկոմի առաջին քարտուղար Բերսաբե Գրիգորյանը, Անասնաբուծական ինստիտուտի օրգանական քիմիայի ամբիոնի վարիչ, դոկտոր-պրոֆեսոր Արաքսյա Բաբայանը, Լենինի շքանշանակիր ինժեներ Նատալյա Մարտիրոսյանը և ուրիշներ։

Անվանի ստախանովականների համբավ են վայելում ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող բազմաթիվ կանայք, որոնք ժամկետից շուտ կատարել են իրենց հնգամյա պլանի առաջադրանքները։

Ամբողջ ռեսպուբլիկային հայտնի են գյուղատնտեսության ֆրոնտի առաջավորներ, բարձր բերքի վարպետներ, Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի կոլխոզի նախկին օղակավարուհի Մարիամ Մարտիրոսյանի, Նոր Բայազետի շրջանի «Սպարտակ» կոլխոզի օղակավարուհի Սիրուն Ումրշատյանի անունները, որոնք բարձր բերք ստանալու համար արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչմանը։

Սովետական կանայք, ինչպես ստալինյան հնգամյակների տարիներին և Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ, այնպես էլ հետպատերազմյան խաղաղ շինարարության տարիներին Հայրենիքին են նվիրում իրենց բոլոր ուժերն ու եռանդը։ Նրանք գիտեն, որ նոր հնգամյա պլանը սկզբից մինչև վերջ տոգորված է սովետական հերոս ժողովրդի համար բարեկեցիկ կյանք ստեղծելու, մեր սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությունն էլ ավելի ամրապնդելու գաղափարներով։



Նրանք գիտեն, որ սովետական ժողովրդի առջև կանգնած է լուսավոր նպատակ՝ կոմունիզմը և որ դեպի այն տանող ուղին ստալինյան նոր հնգամյակի հաջող կենսագործումն է սոցիալիզմի երկրի ժողովրդական տնտեսության հետագա զարգացումն ու ամրապնդումը։

Կապիտալիստական երկրների աշխատավոր կանայք այս տարի մարտի 8-ը տոնում են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա սրման, կապիտալիզմի ուժերի թուլացման և սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի ամրապնդման պայմաններում։ Դեմոկրատական և գաղութային երկրների նորանոր միլիոնավոր աշխատավոր կանայք կանգնում են հակաիմպերիալիստական դեմոկրատական ճակատի մարտիկների շարքերում։

Սովետական երկրի աշխատավորները, ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդների ավանգարդում, տոնում են կանանց Միջազգային օրը, հանրագումարի բերելով այն նվաճումները, որը ձեռք է բերել կինը Սովետական Միության մեջ, պետական, տնտեսական կյանքի, գիտության և կուլտուրայի բնագավառներում։

Մ. ԼԱԼԱՅԱՆ

## ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ 2-ՐԴ ԿՈՆԳՐԵՍԸ

Երեք տարի առաջ, 1945 թվի նոյեմբեր ամսին, աշխարհի բոլոր երկրների առաջավոր կանանց ներկայացուցիչները, հավաքվելով Փարիզում, կանանց շարժման պատմության մեջ առաջին անգամ հիմք դրին Կանանց Միջազգային Դեմոկրատական Ֆեդերացիային՝ նպատակ դնելով անհաշտ պայքար մղել ֆաշիզմի ու ռեակցիայի ուժերի դեմ հանուն դեմոկրատիայի, հանուն խաղաղության պաշտպանության։

Անցավ երեք տարի։ Կանանց Միջազգային Դեմոկրատական Ֆեդերացիան իր 2-րդ Կոնգրեսին եկավ որպես մի միասնական կազմակերպություն։ Նա հիանալի կերպով կարողացավ հակահարված տալ ռեակցիայի կողմից նրա շարքերը պառակտելու բազմաթիվ փորձերին։

Ներկայումս Ֆեդերացիան իր շարքերում ընդգրկում է 81 միլիոնից ավելի կանանց։ Նա դարձել է աշխարհիս դեմոկրատական ճագերի հզորագույն ջոկատներից մեկը։ Նրա



դրոշների տակ են համախմբվել երկրագնդի բոլոր մասերի դեմոկրատ կանայք՝ անկախ ռասայից ու ազգությունից, կրոնական դավանանքից ու քաղաքական հայացքներից։

Երկրորդ Կոնգրեսը տեղի ունեցավ Հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայի մայրաքաղաք Բուդապեշտում, 1948 թվի դեկտեմբերի 1—6-ը։ Միացյալ Նահանգների և այլ իմպերիալիստական երկրների ռեակցիոն շրջանները ամեն կերպ փորձում էին խանգարել դելեգատների հավաքին։ Բայց, չնայած բոլոր խոչընդոտներին, Կոնգրեսը բացվեց ճիշտ նշանակված օրը։ Կոնգրես էին եկել 390 դելեգատ աշխարհի 38 երկրներից։ Դելեգատներից շատերը հասարակական ականավոր գործիչներ էին։

Սովետական Միությունը Կոնգրես էր ուղարկել 39 դելեգատ Միութենական 16 ռեսպուբլիկաներից և հերոս քաղաքներից։ Դելեգացիայի անդամները տարբեր ազգությունների ու տարբեր պրոֆեսիաների կանայք էին՝ մինիստրներ, մինիստրների տեղակալներ, քաղաքական ու հասարակական խոշոր գործիչներ, գիտության, արվեստի, գրականության գործիչներ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, ՍՍՌՄ-ի և ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների

գեպուտատներ, աշխատավորների տեղա-
կան Սովետների դեպուտատներ։ Դելեգա-
ցիան գլխավորում էր սովետական կանանց
Հակաֆաշիստական կոմիտեի նախագահ և
կանանց Միջազգային Դեմոկրատական Ֆե-
դերացիայի նախագահի տեղակալ Նինա
Պոպովան։

Դեկտեմբերի 1-ին Հունգարական պառլա-
մենտի նիստերի դահլիճում կայացավ Կոն-
գրեսի բացումը։ Կոնգրեսը բացեց ԿՄԴՖ-ի
նախագահ, ֆրանսուհի Էժենի Կոտտոնը։
Հետո նա հանդես եկավ հաշվետու զեկուց-
մամբ։ Նա նշեց, որ ներկայումս ֆեդերա-
ցիան ընդգրկում է 56 երկրների կանանց
ազգային կազմակերպությունները։

Ինչպես զեկուցող Էժենի Կոտտոնը, այն-
պես էլ ելույթ ունեցող դելեգատները նշե-
ցին դեմոկրատական կազմակերպություն-
ների ակտիվ պայքարը դեմոկրատիայի և
խաղաղության համար, կանանց իրավահա-
վասարության, երեխաների կյանքի բարե-
լավման համար։

Կանանց միջազգային Օրվա, մարտի 8-ի
կապակցությամբ, Ֆեդերացիայի քարտու-
ղարության կոչին ի պատասխան շատ եր-
կրներում կազմակերպվել էին միտինգներ և
ցույցեր. այսպես օրինակ, Փարիզում ցույցի



էին դուրս եկել 100 հազար կանայք, Հռո-
մում՝ 30 հազար։ Ցույցեր էին կազմակերպ-
վել Ավստրալիայում, Մարոկկոյում, Թունի-
սում, Կորեայում, Լատինական Ամերիկայի
մի շարք երկրներում. միտինգներ և ժողով-
ներ էին հրավիրվել ժողովրդական դեմոկրա-
տիայի երկրներում։ Ֆեդերացիան մեծ աշ-
խատանք էր ծավալել նաև պաշտպանելով
Սովետական Միության կողմից արված ա-
ռաջարկները՝ մեծ տերությունների սպառա-
զինությունը մեկ երրորդի չափով կրճատե-
լու և ատոմային զենքի արգելման վերա-
բերյալ։ Իտալական կանայք Միավորված
Ազգերի Կազմակերպությանը ներկայացրել
էին խաղաղություն պահանջող պետիցիա,
որը ստորագրված էր 3 միլիոն իտալուհինե-
րի կողմից։

Սովետական առաջարկությունը պաշտպա-
նող պետիցիան ստորագրել էին 2,5 միլիոն
չեխուհիներ ու սլովակուհիներ, 2,1 միլիոն
բուլղարուհիներ։

Անգլիայում կանայք մասսայական մի-
տինգներ էին գումարել, պահանջելով խա-
ղաղություն և սովետական առաջարկների
ընդունում։ Ստորագրություններ էին հավա-
քել նաև Գերմանիայի, Ավստրիայի, Հոլան-
դիայի, Բելգիայի կանայք, պահանջելով

խաղաղությունը։ Բելգիայում կանայք ցույց էին կազմակերպել «Երկաթյա վարագույր» հակասովետական պրովոկացիոն ֆիլմի ցուցադրման դեմ։

Կոնգրեսում կենտրոնական հարցն էր կանանց միջազգային շարժման խնդիրները՝ խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարում։ Այդ հարցի վերաբերյալ զեկուցեց Իտալիայի դեմոկրատական կանանց ղեկավար Մարի-Մադլեն Ռոսսին.

ԱՄՆ-ի պատվիրակության ղեկավար Մյուրել Դրեպերը պատմեց, թե ինչպես իրենց երկրում հետապնդվում են բոլոր պրոգրեսիվ տարրերը։ Ամերիկյան դեմոկրատական կանանց կոնգրեսը «ամերիկյան արդարադատության» մինիստրության սև ցուցակի մեջ է։

Անգլիական դելեգատ Վուստեր Նորդը հայտարարեց, որ անգլիական ժողովուրդը ստիպված է մեծ կարիք ու նեղություն կրել իմպերիալիստական ռեակցիոն կառավարության շնորհիվ։ «Ամերիկացիք մեր երկրում,— ասում էր Վուստերը,— ռազմական բազաներ են կառուցում, մեր որդիներին, ամուսիններին, եղբայրներին ուղարկում են կռվելու ազատասեր ժողովուրդների դեմ»։

Իսպանիայի դելեգատ Անիտա Մարտինե-



սը իր ելույթում ցույց տվեց ամերիկյան իմպերիալիզմի ներթափանցումը Իսպանիա։ Այդ պատկերացնելու համար բավական է ասել, որ 1939 թ. Իսպանիայի աերոդրոմները զբաղեցնում էին 2000 հեկտար, իսկ ներկայումս ավելի քան 14700 հեկտար տարածություն։

Իրենց ելույթներում Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի, Ավստրալիայի դելեգատները մերկացնում էին «Մարշալի պլանը», ընդգծում էին, որ այդ պլանի օգնությամբ խախտվում է ազգային էկոնոմիկան, այդ երկրների անկախությունը, մյուս կողմից աճում է գործազրկությունը։

Գերմանիայի դելեգատ Լուիզա Դոռնեմանը իր ելույթում նշեց, թե ինչպես իմպերիալիստական պետությունները արևմտյան զոնաներում վերածնում են նացիզմը և Արևմտյան Գերմանիան դարձնում Եվրոպայում ագրեսիվ իմպերիալիզմի ռազմական բազա։

Նոր դեմոկրատիայի երկրների՝ Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի դելեգատները պատմում էին իրենց երկրների տնտեսական հաջողությունների մասին և նշում կնոջ դերը երկրի դեմոկրատացման ու տնտեսական զարգացման գոր-

ծում։ Նրանցից յուրաքանչյուրն ընդգծում էր Սովետական Միության մեծ դերը դեմոկրատիայի ու խաղաղության համար մղվող պայքարում, և նրա անշահախնդիր օգնությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներին։

Կոնգրեսն իր միաձայն հավանությունն արտահայտեց բուռն ու երկարատև ծափահարություններով ընդունելով Ֆեդերացիայի նախագահ Էժենի Կոտտոնի հետևյալ հայտարարությունը. «Կենտրոնական Եվրոպական երկրների՝ հանդեպ Սովետական Միությունն ունեցած համակրանքի զգացումը հետևանք է ոչ թե Մոսկվայի ճնշման, ինչպես այդ ճգնում են ներշնչել աշխարհիս ժողովուրդներին ռեակցիոներները, այլ դա խորը երախտագիտության զգացում է դեպի այն երկիրը, որը ֆաշիզմի դեմ հաղթանակ տանելու ընդհանուր գործի համար չի խնայել իր միլիոնավոր զավակների արյունը»։

Այնուհետև Էժենի Կոտտոնը Կոնգրեսին առաջարկեց Ֆեդերացիայում ընդգրկված 81 միլիոն դեմոկրատ կանանց անունից խորին շնորհակալություն հայտնել Սովետական Միությանը՝ ընդդեմ պատերազմի հրձիգների նրա հետևողական պայքարի համար։



Առաջարկությունն ընդունվեց միաձայն, երկարատև օվացիայով։

Ֆրանսիական կանանց ներկայացուցիչ Ժաննետ Վերմեշը ասաց. «Մենք մեծ հավատ ունենք դեպի Սովետական Միությունը, դեպի խաղաղության հիմնական պատվարը, որովհետև գիտենք, որ այն ժողովուրդը, որն ինքն է կանգնած իշխանության գլուխ, չի կարող պատերազմ ցանկանալ»։ Ավարտելով իր ճառը, Ժաննետ Վերմեշը արձակեց ֆրանսիական կանանց կողմից սովետական կանանց նվիրած դրոշը, որի վրա գրված էր. «Երբեք Ֆրանսիայի մայրերը իրենց որդիներին չեն տա Սովետական Միության դեմ պատերազմելու»։

Կոնգրեսում մեծ ուշադրության առարկա դարձան կնոջ տնտեսական ու քաղաքական իրավունքների պաշտպանության ու երեխաների վիճակի բարելավման հարցերը։ Առաջին հարցի վերաբերյալ, զեկուցեց ԱՄՆ-ի դելեգատ Էլլեն Ֆիլիպսը։ Երկրորդ հարցի մասին՝ Լեհաստանի դելեգատ Կորմանովան։ Ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունեցող դելեգատները ցույց տվին, թե ինչպես մի շարք երկրներում անցած 3 տարվա ընթացքում կանանց վիճակի մեջ արմատական փոփոխություններ են տեղի ունեցել։ Սովե-

տական Միությունից հետո, ուր կինն արդեն 31 տարի է տղամարդու հետ հավասար իրավունքներ ունի և ակտիվորեն մասնակցում է երկրի քաղաքական, տնտեսական, կուլտուրական կյանքին, կանանց իրավահավասարություն է հայտարարված նաև նոր դեմոկրատիայի երկրներում՝ Ալբանիայում, Բուլղարիայում, Լեհաստանում, Ռումինիայում, Չեխոսլովակիայում, Չինաստանի ազատագրված շրջաններում, Հյուսիսային Կորեայում, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում։

Երկրորդ Միջազգային Կոնգրեսը կոչ արեց կանանց ազգային կազմակերպություններին՝ ամեն կերպ ուժեղացնել պայքարը կանանց տնտեսական, քաղաքական և քաղաքացիական իրավունքները ձեռք բերելու համար բոլոր այն երկրներում, ուր նրանք այդ դեռ չունեն։ Կոնգրեսը դիմեց Միավորված Ազգերի Կազմակերպությանը, պահանջելով միջոցներ ձեռք առնել իրականացնելու համար կազմակերպության կանոնադրության մեջ նախատեսված կանանց իրավահավասարությունը, պահանջելով նաև աշխատանքի հավասար վարձատրություն տղամարդկանց հետ։

Ինչպես մանկական հարցի մասին զե-



կուցման մեջ, այնպես էլ սովետական դելեգատ Պարֆենովայի ճառում, նշվեց Սովետական Միության մեջ մանուկների վերաբերմամբ ցուցաբերվող ստալինյան հոգատարությունը, մանկական հաստատությունների, դպրոցների, բժշկական հիմնարկների աճումը։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում օրենսդրությունը պաշտպանում է մոր և մանկան շահերը։ Մանուկները ձրի ուսում են ստանում։

Կոնգրեսը կոչ արեց կանանց ազգային կազմակերպություններին ուժեղացնել պայքարը երեխաների դրության ու դաստիարակման բարելավման համար։ Պահանջվեց արգելել մինչև 14 տարեկան երեխաների աշխատանքը, այդպիսի շահագործումը համարելով ոճրագործություն և օրենքով պատժի ենթակա։ Կոնգրեսը պահանջեց նաև բոլոր երկրներում մտցնել տարրական ձրի կրթություն, անկախ ազգությունից, ռասայական պատկանելիությունից և նյութական վիճակից։ Կոնգրեսը պահանջեց ցրել և արգելել երեխաների ու պատանեկական ռեակցիոն ու պրոֆաշիստական կազմակերպությունները, որոնք երեխաներին դաստիարակում են միլիտարիզմի ու ռասիզմի ոգով։

Մեծ հետաքրքրություն ցուցաբերեց Կոնգ-

րեսը Ասիայի ու Աֆրիկայի երկրներում կանանց դեմոկրատական շարժումը զարգացնելու հարցի նկատմամբ։ Չինաստանի դելեգատ Ցայ-Չանը իր զեկուցման մեջ նշեց, որ հիտլերյան Գերմանիայի ու Ճապոնիայի դեմ գաղութային և կախյալ երկրների մղած ակտիվ պայքարը չբերեց նրանց երազած ազատությունն ու անկախությունը։ Միավորված Ազգերի կազմակերպության կանոնադրությամբ նախատեսված մեծ և փոքր ազգերի իրավահավասարությունը չիրականացավ։

Հարավային Կորեայի դելեգատ Զու-Ան-Սին դիմեց Կոնգրեսին, խնդրելով պահանջել ամերիկյան զորքերը հեռացնել Կորեայից։

Վյետնամի ներկայացուցիչ Ցամ-Նյուկթյուն դիմեց Կոնգրեսին՝ խնդրելով ողջույնի նամակ ուղարկել Չինաստանի, Վյետնամի, Ինդոնեզիայի, Մալայայի ու Բիրմայի հերոսական կանանց, որոնք պայքարում են իրենց երկրների անկախության համար, և պահանջել գաղութային պետությունների կառավարություններից իրենց զորքերը դուրս հանել այդ երկրներից։

Կոնգրեսի աշխատանքներում ամենահանգիսավոր մոմենտը խաղաղության պաշտպանության Մանիֆեստի ընդունումն էր։



Այդ Մանիֆեստում սովետական կանանց են ուղղված հետևյալ խոսքերը.

«Սովետական Միության կանայք. շարունակեցեք է՛լ ավելի ամրացնել ձեր հայրենիքի՝ խաղաղության ու դեմոկրատիայի պատվարի հզորությունը։ Հիշեք՝ որքան հզոր լինի ձեր երկիրը, այնքան ամուր կլինեն խաղաղության ուժերը»։

ԿՄԴՖ-ի 2-րդ Կոնգրեսը անցավ քաղաքական բարձր մակարդակի վրա։ Դելեգատների ելույթները ցույց էին տալիս նրանց քաղաքական հասունությունը, միջազգային իրադրության մեջ կողմնորոշվելու կարողությունը, ագրեսիայի ուժերի դեմ, հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի համերաշխ գործելու ձգտումը։ Կասկած չկա, որ 2-րդ Կոնգրեսը մի ներդրում է խաղաղության ու դեմոկրատիայի գործում, նոր պատերազմի հրձիգների դեմ մղվող ընդհանուր պայքարի մեջ։

Ա. ԲԱԲԱՅԱՆ

Քիմիական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր (Կանանց Միջազգային Դեմոկրատական Ֆեդերացիայի 2-րդ Կոնգրեսի դելեգատուհի)։

# ԱՌԱՋԱՎՈՐ ԲՐԻԳԱԴԱՎԱՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

Նոր Բայազետի շրջանի «Կարմիր հոկտեմբեր» կոլխոզի դաշտավարական № 5 բրիգադայի բրիգադավար, Լենինի շքանշանակիր Վանո Ղարիբյանը ճանաչված է որպես առաջավոր, բանիմաց մարդ, որը բրիգադայում աշխատանքը լավ կազմակերպելու, սովետական ամենաառաջավոր ագրոտեխնիկան ճշտորեն կիրառելու և նորանոր նախաձեռնություններ հանդես բերելու շնորհիվ ամեն տարի ստանում է բարձր բերք։ Նրա ղեկավարած բրիգադան տարեց-տարի բարձրացնում է կոլխոզային դաշտերի բերքատվությունը։ Այսպես, եթե բրիգադան 1946 թվին ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 12 ցենտներ, 1947 թվին՝ 14,5 ցենտներ, ապա 1948 թվին ստացավ 18 ցենտներ բերք, իսկ բրիգադայի առանձին օղակները յուրաքանչյուր հեկտարից ստացել են մինչև 25 ցենտներ բերք։

Բրիգադավար Վ. Ղարիբյանի հաջողու-



թյունները հետևանք են այն բանի, որ նա առանձնահատուկ ուշադրություն է դարձնում ցանքաշրջանառության ճիշտ կիրառման վրա։ Ունենալով գյուղատնտեսական աշխատանքի երկար տարիների փորձ, Վ. Ղարիբյանն առանձնահատուկ ուշադրություն է դարձնում վարի ու ցանքի որակի վրա։ Որպես կանոն, նա վարը կատարում է 28—30 սանտիմետր խորությամբ։ Վարից հետո նա վերցնում է մեկ մետրից ավելի երկարությամբ ճիպոտ և հորիզոնական կերպով մտցնում ակոսների մեջ։ Եթե ճիպոտը ազատ կերպով անցնում է ակոսված հողում, ուրեմն վարը որակյալ է, եթե ոչ, անորակ է։ Գարնանացանի ընթացքում Ղարիբյանը նման ստուգում կատարում է ամեն օր։

— Լավ վարը միայն բավական չէ,— ասում է Ղարիբյանը,— դրա հետ միասին պետք է կատարել նաև լավ ցանքս, իսկ լավ ցանքսի համար անհրաժեշտ է շարքացան։ Երբ շաղացան է կատարվում, այն էլ ոչ հավասար ակոսներ ունեցող հողում, սերմերը ընկնում են տարբեր խորության վրա ու տարբեր ժամանակում էլ ծիլ արձակում։ Բերքահավաքին նկատելի է դառնում, որ հասունացած արտի մեջ կան չհասունացած հասկեր, որոնք հենց շատ խորը ընկած սեր-

մերի ծիլերն են, որ ուշ են դուրս եկել և ուշ
էլ հասունացել։ Որպեսզի նման բան տեղի
չունենա և հասունացած հասկերի հետ ըն-
տրված չհասունացած հասկերն էլ չհնձենք
ու արհեստականորեն գցենք բերքատվու-
թյունը, մենք ցանքը ամբողջապես կատա-
րում ենք շարքացանով։

Գյուղատնտեսական աշխատանքներում ա-
մեն մի գործ պետք է կատարել ժամանա-
կին։ Հենց այդ նկատի ունենալով Վ. Ղա-
րիբյանը այժմվանից եռանդուն կերպով նա-
խապատրաստվում է գարնանացանին։ Նրա
ղեկավարած բրիգադան գարնանացանի հա-
մար պատրաստ ունի 10 գութան, որից
չորսը պահեստային, 5 փոցխ, 14 սայլ, 32
լուծ և այլ տեսակի մանր գործիքներ, սկսած
սամաթելից վերջացրած շղթայով, որոնք
պատրաստի վիճակում դրված են պահես-
տում։

Ի տարբերություն նախորդ տարիների,
բրիգադայի կենդանի քաշող ուժի խնամքը
հանձնարարված է բացառապես մաճկալնե-
րին և նրանց օգնականներին, որոնք անմի-
ջականորեն շահագրգռված են լծկաններին
լավ խնամելու և հանգստացնելու մեջ, որ-
պեսզի գարնանացանի ժամանակ տան բար-
ձրր արտադրանք և կարողանան հացահատի-



կային կուլտուրաների ցանքը ավարտել 10—
12 աշխատանքային օրում։ Մաճկալ-անաս-
նապահները գոմերը պահում են մաքուր
վիճակում, օրեկան 3 անգամ խողանակով
մաքրում, իսկ 25 օրը մեկ անգամ տաքաց-
րած ջրով լողացնում լծկաններին։

«Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզ-
ները գարնանացանին նախապատրաստելու
ընթացքի մասին» ՍՍՌՄ Միության Մինիս-
տրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ո-
րոշումը ուսումնասիրելուց հետո առաջավոր
բրիգադավար Վ. Ղարիբյանը ձեռնամուխ է
եղել ձմեռային ագրոտեխնիկական միջոցա-
ռումների կատարմանը, բրիգադան կազմա-
կերպել է դաշտը դուրս բերելու և աշնանա-
ցանի վրա ձյուն կուտակելու համար։ Նա
միաժամանակ նախապատրաստական լուրջ
աշխատանք է կատարում, որպեսզի ձնհալ
ջրերը պահպանվեն դաշտում և շատ խո-
նավություն կուտակվի հողում, որը երաշտի
դեմ պայքարի էֆեկտիվ միջոցներից մեկն է։

— Անցյալ տարի,— պատմում է Ղարիբ-
յանը,— գարնան սկզբի օրերից ես փորձ
կատարեցի Աղմաղանի ձնհալ ջրերով ոռոգե-
լու աշնանացանը։ Այդ նպատակով առանձ-
նացրի 10 հեկտար աշնանացան և այն լավ
ոռոգեցի։ Եղան մարդիկ, որ ինձ ասում էին,

թե աշունը սառն է և ցանքը կմնասվի։ Բայց ալ։ Ձմռան ցրտից դուրս եկած ցանքը գարնան սառը ջրից չի տուժում, որովհետև ջուրը մինչև բարձր սարերից ցած է իջնում որոշ չափով տաքանում է։ Ձնհալ ջրերը ընկերքում շատ պղտոր են լինում, որովհետև անցնելով դաշտերի միջով քանդում են անմշակ հողը և իրենց հետ բերում տիղմ, որը հրաշալի պարարտանյութ։ Այսպիսով և՛ ցանքն ես ոռոգում, և՛ նրան սնուցում տալիս։ Այս եղանակով ոռոգած 10 հեկտար աշնացանի տարածության յուրաքանչյուր հեկտարից ես ստացա 20 ցենտներ ցորեն։ Հաշվի առնելով այդ, առաջիկա գարնանը ամբողջ ցանքատարածությունը ոռոգելու եմ ձնհալ ջրերով, որոնք հատկապես գարնան ամիսներին առատորեն հոսում են մեր դաշտերով։ Այդ ջրերը մեզ օգուտ են տալիս նաև հետագայում, երբ հացաբույսերը խողովակակալվում են։ Բույսերը իրենց աճման այդ շրջանում խիստ կարիք են զգում լրացուցիչ սննդի։ Նրանց լրացուցիչ սնունդ տալու համար մենք արտերի վերին մասերում փորում ենք մեծ փոսեր, փոսերում փտած գոմաղբ լցնում և այն ջրի մեջ լուծում ու տալիս հացաբույսերին։ Այս եղանակով յուրաքանչյուր



հեկտարի բերքատվությունը 3-ից 3,5 ցենտներով բարձրանում է։

Բերքատվության բարձրացման գործում չափազանց մեծ նշանակություն ունի տեղական պարարտանյութի օգտագործումը։ Սակայն եղած տեղական պարարտանյութը չի բավականացնում ամբողջ ցանքատարածության պարարտացման համար, մանավանդ գյուղից 8—9 կիլոմետր հեռավորության վրա ընկած դաշտերին, ուր դժվար է պարարտանյութ տեղափոխել։ Այս հարցը երկար ժամանակ մտատանջում էր Վ. Ղարիբյանին։ Բայց նա դրա միջոցը ես գտավ։ Սարի գոմերում ամեն տարի կոլխոզը պահում է մոտ 9000 գլուխ անասուն, որից 7500 գլուխ ոչխար։ Ոչխարների գոմերում, աղլներում կուտակված կա մեծ քանակությամբ փայլին, որը ավելի ուժեղ պարարտանյութ է, քան ասենք խառն աղբը, կամ մոխիրը։ Դրա համար էլ Վ. Ղարիբյանը առանձնացրել է մարդիկ, որոնք եղած փայլինը հավաքելու և սայլերով տեղափոխելու են վերին մասում եղած արտերը, որով լուծվում է ամբողջ ցանքատարածության պարարտացման հարցը։

Բրիգադավար Վ. Ղարիբյանը յուրաքան-

չյուր նախաձեռնության դեպքում, խորհրդակցում է կոլխոզի նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկեր Հակոբ Գրիգորյանի հետ, որը զարգացած, բանիմաց ու մեծ փորձի տեր մարդ է։ Նրանք երկուսով խորհրդակցեցին և գտան, որ պետք է ձեռնամուխ լինել նաև կարտոֆիլի ցանքատարածության պարարտացման, որի համար էլ որոշեցին արոտից հետո, երբ ոչխարները հանգստանում են, նրանց նստեցնել այն տարածությունների վրա, որտեղ կարտոֆիլ է ցանվելու։ Այդպիսով այդ հողերը փայլինով կպարարտանան։ Այդ փորձը կատարվեց անցյալ տարի, որի հետևանքով էլ կարտոֆիլի բերքատվությունը զգալի չափով բարձրացավ։ Այս տարի Վ. Ղարիբյանը նույն մեթոդը կիրառելու է կարտոֆիլի ամբողջ ցանքատարածությունը պարարտացնելու համար։

Կարելի է նման փաստեր շատ բերել ցույց տալու, թե ինչպես կոլխոզային գյուղի անվանի մարդը նորանոր նախաձեռնություններ է հանդես բերում բարձր բերք ստանալու և ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարի որոշումները ամբողջովին կենսագործելու համար։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---



# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Հինգերորդ տարին է, ինչ Արհեստագործական կոոպերացիայի վարչության պարտկազմակերպության ագիտկոլեկտիվի ագիտատորներն ագիտացիոն-մասսայական աշխատանք են տանում Երևանի Սարի թաղում։ Թաղամասի բնակիչների համար ագիտատորները ցանկալի հյուրեր են. բնակիչների հետ ունեցած իրենց հետաքրքիր զրույցներով, նրանց կարիքները բավարարելու մշտական պատրաստակամությամբ ագիտատորները վայելում են նրանց սերն ու հարգանքը։

Ագիտատորների լավագույն աշխատանքը հետևանք է պարտիական կազմակերպության կողմից ագիտկոլեկտիվին ցույց տրվող կոնկրետ ու ամենօրյա ղեկավարության, ինչպես նաև ագիտկոլեկտիվի ներսում աշխատանքի կազմակերպման։ Կանոնավոր կերպով, յուրաքանչյուր շաբաթ ագիտկոլեկտիվն ունենում է իր ժողովները, որտեղ հան-

ռագումարի են բերվում շաբաթվա ընթացքում
կատարված աշխատանքները և ապա ագիտ-
կոլեկտիվի ղեկավարը յուրաքանչյուր ագի-
տատորի նոր առաջադրանքներ է տալիս։
Ագիտատորների լավագույն աշխատան-
քի արդյունքները առանձնապես երևա-
ցին մեր երկրի իշխանության ղեկավար օր-
գանների ընտրությունների ժամանակ։ Շնոր-
հիվ ագիտատորների կատարած ագիտա-
ցիոն-մասսայական լավագույն աշխատան-
քի, Սարի Թաղի աշխատավորները քաղաքա-
կան բարձր ակտիվությամբ մասնակցեցին
ինչպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի, Հայկա-
կան ՍՍՌ Գերագույն Սովետի, Հայկական
ՍՍՌ տեղական Սովետների, այնպես և Հայ-
կական ՍՍՌ ժողովրդական դատարանների
ընտրություններին, միահամուռ կերպով ի-
րենց ձայնը տալով կոմունիստների և ան-
կուսակցականների բլոկի թեկնածուների օգ-
տին։

Արտասահմանում ապրող հայերի մի զգա-
լի մասի Սովետական Հայաստան վերադառ-
նալու օրվանից Սարի Թաղում մեծ քա-
նակությամբ նոր ընտանիքներ տեղավոր-
վեցին. այս հանգամանքը պահանջեց մեր
ագիտկոլեկտիվից վերակառուցել իր աշ-
խատանքները։ Անհրաժեշտ էր սովետա-



կան նոր քաղաքացիներին բացատրել սովե-
տական պետության կառուցվածքի սկզբ-
բունքները, ծանոթացնել մեր կյանքի սո-
ցիալիստական համակեցության կանոննե-
րին, մեր երկրի ձեռք բերած տնտեսական ու
կուլտուրայի նվաճումներին, օգնել նրանց
տեղավորվելու, իրենց կարիքները հոգալու։
Եվ ահա պարտիական կազմակերպության
ղեկավարությամբ ագիտկոլեկտիվը մշակեց
հայրենադարձների մեջ տարվելիք ագիտա-
ցիոն-մասսայական աշխատանքի մանրա-
մասն ծրագիր, ավելացվեց ագիտատորների
թիվը և ագիտատորներին առաջադրանք
տրվեց թաղամասում լինել շաբաթական ոչ
թե մեկ, այլ երկու և երեք անգամ։ Ագի-
տատորները պատվով են կատարում ի-
րենց վրա դրված այս նոր, պատասխանա-
տու պարտավորությունը։ Սովետական նոր
քաղաքացիները իրենց հայրենիքում առա-
ջին անգամ նրանցից, ագիտատորներից,
լսելով Սովետական երկրի վերաբերյալ ճըշ-
մարիտ խոսքը, նրանց պատմածները՝ կա-
ռուցվող ավելի փայլուն ապագայի մասին՝
մեծ վստահությամբ տածեցին դեպի իրենց
ագիտատորները և հայրենիքի նկատմամբ
անսահման սիրով լցված ակտիվորեն մաս-

նակից դարձան մեր երկրի սոցիալիստական շինարարությանը։

Ագիտացիոն աշխատանքի հետ զուգընթաց ագիտատորները մանրամասն հետաքրքրվում են նաև Սովետական Հայրենիք վերադարձած քաղաքացիների կյանքի պայմաններով և հարկ եղած դեպքում օգնության հասնում նրանց։ Ահա այս է պատճառը, որ սովետական նոր քաղաքացիները, հարկ եղած դեպքում, այնպիսի մեծ վստահությամբ ագիտատորներին են դիմում իրենց անձնական գործերով ևս։

Այսպես, օրինակ, հայրենիք վերադարձած Օնիկ Խանդուրյանը դիմեց ագիտատոր Պ. Ստեփանյանին, խնդրելով օգնել փոխելու իր աշխատանքը։ Ագիտատորը այդ մասին հայտնեց պարտբյուրոյին, որի օգնությամբ Խանդուրյանը շուտով աշխատանքի տեղավորվեց «Կարմիր հրուշակ» արտելում։ Ագիտատորը Խանդուրյանին օգնեց նաև երեխաներին մանկապարտեզում տեղավորելու համար։ Մոտենում էր ձմեռը, բայց Օնիկ Խանդուրյանը դեռևս չէր ավարտել իր



նոր բնակարանի կառուցումը։ Այստեղ նրան նույնպես օգնության հասավ ագիտատորը։ Նրա միջամտությամբ Արհեստագործական կոոպերացիայի վարչությունը Խանդուրյանի բնակարանի կառուցման համար տրամադրեց շինափայտ, ապակի և այլ շինանյութեր և փոխադրական միջոցներ։ Շատ չանցած Խանդուրյանի ընտանիքը տեղավորվեց իր նորակառույց գեղեցիկ բնակարանում։

Բայց այսպիսի դեպքերը եզակի չեն Սարի Թաղի ագիտատորների աշխատանքում։ Այդպիսի օրինակներ կարելի է բերել նաև լավագույն ագիտատորներ Ս. Ավետիսյանի, Գ. Վարդանյանի, Ս. Մանասյանի և շատ ուրիշների աշխատանքից։ Մտեք Սարի Թաղի յուրաքանչյուր հայրենադարձ բնակչի տունը, խոսեցեք նրա հետ և ամենուրեք սովետական իշխանության, մայր հայրենիքին անսահման նվիրվածության խոսքեր կլսեք. սովետական այդ նոր քաղաքացիներն այլևս այն անհամարձակ, մեր երկրի կյանքին անտեղյակ մարդիկը չեն, այլ սոցիալիստական շինարարության ակտիվ մասնակիցներ, սովետական ազատ, իրավահավասար քաղաքացիներ։ Նրանց մտածելակերպի այդ վերափոխումը առանձնապես ցայտուն կերպով հանդես եկավ Հայկական ՍՍՌ Գերագույն

Սովետի, տեղական Սովետների և ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ, երբ օգտվելով Ստալինյան Կոնստիտուցիայով իրենց տրված մեծագույն իրավունքներից, նրանք սովետական բոլոր քաղաքացիների հետ համահավասար մասնակցեցին իշխանության օրգանների ընտրություններին, միահամուռ կերպով հայտարարելով, որ իրենց ձայնը կտան հարազատ սովետական իշխանության օգտին։

Հուզիչ էին Եգիպտոսից վերադարձած Փանոս Բոշկարյանի խոսքերը, որոնք նա ասաց փետրվարի 6-ին, Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների օրը իր ընտանիքի անդամների ու հարազատների հետ ընտրական կետը քվեարկելու գալով։

«Յուրաքանչյուր օր,—ասաց նա,—մի նոր ուրախություն ու երջանկություն է բերում մեզ։ Մեզանից ո՞վ կարող էր այնտեղ, կապիտալիզմի երկրում մտածել, որ դատավորին ինքն է ընտրելու։ Այնտեղ դատավորը հարուստների, շահագործողների մարդն է, նրա միայն անունը ահ ու սարսափ է տարածում աշխատավոր մարդկանց վրա։ Իսկ այսօր



մեր հարազատ Հայրենիքում մենք ենք ընտրելու ժողովրդական դատավորին. ես նրան, ընկեր Սուրեն Առաքելյանին լավ եմ ճանաչում, անձամբ տեսել ու լսել եմ նրան, նրա մասին մեզ պատմել է մեր ագիտատոր ընկեր Ավետիսյանը, մենք մեր ձայնը կտանք ընկեր Առաքելյանի օգտին. նա մեր մարդն է»։

Արհեստագործական կոոպերացիայի վարչության պարտկազմակերպության բյուրոն քննության առնելով ագիտատորների կատարած աշխատանքները, շնորհակալություն հայտնեց լավագույն ագիտատորներին՝ Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների նախապատրաստության ընթացքում նրանց կատարած լավագույն աշխատանքի համար։ Միաժամանակ պարտիական բյուրոն նոր առաջադրանքներ տվեց մեր թաղամասում ագիտացիոն-մասսայական աշխատանքը շարունակելու վերաբերյալ։ Ելնելով այդ առաջադրանքներից մեր ագիտկոլեկտիվը աշխատանքի նոր ծրագիր մշակեց. այդ ծրագրով էլ մենք, ագիտատորներս շարունակում ենք մեր պարապմունքները Սարի թաղի բնակիչների մեջ։

Ա. ՍԱՐԱՖՅԱՆ

# ԹԵՄԱ, ՊԼԱՆ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ՝ «ԿՈԼԽՈԶՆԵՐԸ, ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԸ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ»

1. «Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանին նախապատրաստելու մասին» ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը հանդիսանում է աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիր։ Ժամանակին ու բազմակողմանիորեն նախապատրաստվել առաջիկա դաշտային աշխատանքներին և կազմակերպված, սեղմ ժամկետում անցկացնել գարնանացանը։

2. Գյուղատնտեսության վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումը վկայում է ստալինյան հոգատարությունը գյուղատնտեսության մթերքների առատությունն ավելացնելու, հողագործության կուլտուրան բարձրացնելու նկատմամբ։

3. 1949 թվին գյուղում սոցիալիստական շինարարության գլխավոր խնդիրն է՝ կազմակերպորեն-տնտեսապես էլ՛ ավելի ամրապնդել գյուղատնտեսական



արտելները և բազմապատկել կոլխոզների հանրային սեփականությունը։

4. Գյուղատնտեսական աշխատանքների պլանավորման ժամանակ ճիշտ տեղաբաշխել ուժերը բրիգադաներում ու օղակներում և որոշել յուրաքանչյուր կոլխոզնիկին ու կոլխոզնիկուհուն տրվելիք առաջադրանքը՝ սա կարևորագույն միջոցառում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության պլանները գերակատարելու, անասունների գլխաքանակը ավելացնելու և նրանց մթերատվությունը բարձրացնելու համար։

5. 1949 թվի գարնանացանի համար կոլխոզները գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների սեփական սերմերով ապահովելը, ինչպես նաև ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների համատարած սորտային ցանքերին անցնելը հանդիսանում է բերքատվության բարձրացման կարևորագույն պայմանը։

6. Գարնանացանի հաջող անցկացումը զգալի չափով կախված է կոլխոզների կենդանի քարշող ուժը և գյուղատնտեսական ինվենտարը ժամանակին նախապատրաստելուց և դրանք դաշտային աշխատանքներում ճիշտ օգտագործելուց։

7. Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերք ստանալու համար մղվող պայքարում կարևորագույն ձեռնարկում է ձմեռային ագրոտեխնիկական միջոցառումների կիրառումը։

8. Գյուղատնտեսության վերելքի խնդիրները յու-

ծելու գործում կարևորագույն միջոցառումներից մեկը կոլտնտեսային կադրերի պատրաստումն է՝ գյուղատնտեսական հատուկ դպրոցներում, դասընթացներում, ամբիոններում և ագրոտեխնիկական ուսուցման խմբակներում։

9. 1949 թ. ՄՏ կայանների խնդիրն է ոչ միայն ամրապնդել ձեռք բերած հաջողությունները, այլև հասնել «մեքենա-տրակտորային պարկի էլ ավելի բարձր արտադրողականության, զգալիորեն բարելավել աշխատանքների որակը և ապահովել բերքատվության բարձրացումը կոլխոզներում։

10. Մինչև գարնանացանը սկսվելը ՄՏ կայանները մեծ և կարևոր աշխատանք պետք է կատարեն կոլխոզների հետ պայմանագրեր կնքելու, արտադրական պլանները կազմելու, ինչպես նաև տրակտորային բրիգադաների համար առաջադրանքներ մշակելու ուղղությամբ։

11. 1949 թ. կոլխոզներում բերքատվության պլանները գերակատարելու հետ միասին ՄՏ կայանների աշխատողների խնդիրն է միաժամանակ խնայել վառելանյութը, նյութերը, պահեստի մասերը և իջեցնել տրակտորային աշխատանքների ինքնարժեքը։

12. Ներկայումս գլխավորն այն է, որ սոցիալիստական դաշտերի առաջավորների, բարձր բերքի վարպետների փորձի հիման վրա կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները ժամանակին ու բազմակողմանիորեն նախապատրաստվեն առաջիկա դաշտա-



յին աշխատանքներին և կազմակերպված անցկացնեն գարնանացանը։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը «Կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները գարնանացանին նախապատրաստելու ընթացքի մասին»։

«Սովետական Հայաստան» 12 և 13 փետրվարի 1949 թ.։

2. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» (Հայպետհրատ, 1947 թ.)։

3. ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարում ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցումը և համագումարի որոշումները։

(«Սովետական Հայաստան» 13 և 17 նոյեմբերի 1948 թ., «Պարտիական կյանք» № 11 նոյեմբեր 1948 թ., ինչպես և առանձին հրատարակությամբ)։

4. «1949 թվին բարձր բերք ստանալու համար» «Պրավդա»-յի փետրվարի 10-ի առաջնորդողը (Տես «Սովետական Հայաստան»-ի 1949 թվի փետրվարի 11-ի համարում)։

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

Կ. Կալաշնիկով, «Բոլշևիկյան ագիտացիայի հիմնական գծերը» Հայպետհրատ. 1948 թ. 74 էջ.

«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած Կ. Կալաշնիկովի «Բոլշևիկյան ագիտացիայի հիմնական գծերը» բրոշյուրը տալիս է բոլշևիկյան ագիտացիայի դերն ու նշանակությունը, նրա հիմնական գծերը։

Բոլշևիկյան պարտիան, Լենինը և Ստալինը թե ռևոլյուցիոն շարժման և թե սոցիալիստական շինարարության ամբողջ պատմության ընթացքում միշտ մեծ նշանակություն են տալիս քաղաքական ագիտացիային, որպես աշխատավորների հետ պարտիայի կապերն ամրապնդելու, նրանց կոմունիստական դաստիարակության հզոր միջոցի։

Այդ բրոշյուրի առաջին բաժնում տրվում է բոլշևիկյան ագիտացիայի դերն ու նշանակությունը, մասնավորապես նրա նշանակությունը ռևոլյուցիոն շարժման, մեր երկրում սոցիալիզմի կառուցման տարբեր էտապնե-



րում։ «Ղեկավարել այդպիսի պայմաններում,—ասում է ընկեր Ստալինը,—նշանակում է կարողանալ համոզել մասսաներին պարտիայի քաղաքականության ճշտության մեջ, առաջադրել ու անցկացնել այնպիսի լոզունգներ, որոնք մասսաներին մոտեցնում են պարտիայի դիրքերին և նրանց համար հեշտացնում են պարտիայի քաղաքականության ճշտությունը իրենց սեփական փորձով հասկանալը, նշանակում է մասսաներին բարձրացնել մինչև պարտիայի գիտակցության մակարդակին և, այդպիսով, ապահովել մասսաների աջակցությունը, նրանց պատրաստակամությունը վճռական պայքարի համար։

Այդ պատճառով համոզելու մեթոդը պարտիայի կողմից դասակարգին ղեկավարելու հիմնական մեթոդն է»։

Քաղաքական ագիտացիան սովետական ժողովրդի իդեական դաստիարակության հզոր զենք է, մեր երկրում կոմունիզմի շինարարության խնդիրները լուծելու համար միլիոնավոր աշխատավորներին մոբիլիզացնելու գործում կարևորագույն միջոց։

Ինչո՞ւմն է բոլշևիկյան ագիտացիայի ուժը։ Այդ ամենից առաջ նրա բարձր իդեականության մեջ է։ Դա նշանակում է, որ քա-

ղաքական ագիտացիան մեր երկրում պետք է կրի խսկապես կոմունիստական բնույթ ուղղված լինի սովետական ժողովրդին կոմունիզմի ոգով դաստիարակելու, սովետական յուրաքանչյուր քաղաքացու կոմունիզմի ակտիվ ու գիտակից կառուցող դարձնելու կողմը։ Քաղաքական ագիտացիան պետք է լինի կոնկրետ, հրատապ, ճշմարտացի և նպատակասլաց. Նա պետք է յուրաքանչյուր սովետական քաղաքացու մեջ դաստիարակի իր Հայրենիքի նկատմամբ ջերմ, բոցավառ անսահման սեր։

«Մեր ամեն մի ագիտատոր պետք է սովորի ագիտացիայի իդեականությունը,— ասված է բրոշյուրում,—մեր պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդներ՝ Վ. Ի. Լենինից և Ի. Վ. Ստալինից»։

Քաղաքական ագիտացիայի մյուս կարևորագույն գիծը նրա ճշմարտությունն է, այն հանդիսանում է բոլշևիկյան ագիտացիայի հիմքը։ Ի տարբերություն բուրժուական և աջ սոցիալիստական պարտիաների դեմագոգիայի, դատարկաբանության և արտախոսության, բոլշևիկյան պարտիան հանդես է գալիս ուժեղ զենքով՝ ճշմարտությամբ։ Բոլշևիկների խոսքը երբեք չի տարբերվում գործից։



Միաժամանակ մեր ագիտացիան պետք է կրի մարտական, հարձակողական բնույթ։ Ագիտացիա անել, ասում է ընկեր Ստալինը, չի նշանակում միայն համոզել, այլև մերկացնել։ Դա նշանակում է, որ բոլշևիկ ագիտատորները պետք է չխուսափեն սուր հարցերից, չնահանջեն դժվարությունների առաջ։

Ապա բրոշյուրում հանգամանորեն խոսվում է բնակչության մեջ տարվող քաղաքական ագիտացիայի մակարդակի բարձրացման հարցերի մասին, կապված «Ստալինգրադի պարտիական կազմակերպությունում ագիտատորների հետ կատարվող աշխատանքի թերությունների և նրա բարելավման միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշման հետ։

Բրոշյուրում տրված է մեր պարտիական կազմակերպությունների անելիքները՝ վճռականորեն բարելավելու ագիտացիոն-մասսայական աշխատանքը աշխատավորության շրջանում, ամենամեծ ուշադրություն դարձնելով ագիտացիայի իդեական-քաղաքական մակարդակի բարձրացմանը։

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. ՋՎՈՆՈՎ— «Լենինիզմը ժամանակակից ամենաառաջավոր աշխարհայացքն է». Հայկ. ՍՍՌ Հեռակա Մանկ. ինստ. հրատ., 1948 թ. տիրաժ՝ 1500, 24 էջ, գինը՝ 1 ռ.։

«Գիտա-մասսայական գրադարանի» սերիայով.

Պրոֆ. Ի. Ֆ. ՊՈԼԱԿ— «Ժամանակ և օրացույց». Հայպետհրատ, 1948 թ., տիրաժ 3000, 50 էջ, գինը՝ 3 ռ.։

---

Պատասխանատու խմբագիր՝ Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

ՎՖ 00446 Պատվեր № 20 Տիրաժ 8.500

Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитапии ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 4 1949 г.